ՀԻՆԳՇԱԲԹԻ առաւօտ, ժամը 65·45էն սեսեալ՝ Ռեկանը «արգիլեալ գօտի» հըռչակուած է: Կը սպասուի որ Ֆրանսա պայթեցնէ հիւլէական իր երկրորդ ռումբը:

ՏԱՄՆԸԵՕԹԸ հրշէջներ զոհ գացած են հրդեհի մը որ յառաջ եկած է Կլազկոյի նաւահանգիստին մէջ: Քառորդ միլիոն լիտր Ոսկեքի վառած է:

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐ
## ՍԱՀԱԿ ՏԷՐ ԹՈՎՄԱՍԵԱՆԻ
## ՄԱՀՈՒԱՆ ԱՌԹԻՒ

ՄԻՒՆԻԽ՝ Հիւսիսային Կովկասցիներու Ազգ. կեդրոնին կողմէ Քանթեմիր եւ ընկերները իրենց վշտագին ցաւակցութիւնները կը յայտնեն՝

ԸՆԿԵՐ ՍԱՀԱԿ ՏԷՐ ԹՈՎՄԱՍԵԱՆԻ

դառնաղէտ մահուան առթիւ իր գաղափարակից ընկերներուն, եւ այրիին:

×

ԿՐԸՆՈՊԼԸ.— Հ. Յ. Դ. Եօթնեղբայրեան ենթակոմիտէն կը սգայ՝

ԸՆԿԵՐ ՍԱՀԱԿ ՏԷՐ ԹՈՎՄԱՍԵԱՆԻ

մահը եւ իր ցաւակցութիւնը կը յայտնէ Տիկին Տէր Թովմասեանին:

×

ԿԱՊ. ԽԱՉԻ Շաւիլի մասնաճիւղի ընկերուհիները ցաւակցութիւն կը յայտնեն ընկերուհիներ, Զարուհի Տէր Թովմասեանի եւ Օր. Շէօհլէեանի ողբացեալ Սահակ Տէր Թովմասեանի ցաւալի մահուան առթիւ:

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Մարսէյլէն Տէր եւ Տիկին Ս. Հայրապետեան՝ 10 Ն. Ֆ., Շուշանիկ Գրիգորեանի, Պ. Լեւոն Քէնտիրեան՝ 10 Ն. Ֆ. Ոսկիան Քէնտիրեանի յիշատակներուն:

### ՆՈՒԷՐՆԵՐ

Յ. Տէր Յովհաննէսեան հիւանդութենէն պաքինման առթիւ 20ական Ն. Ֆ. կը նուիրէ հետեւեալ կազմակերպութեանց.— Կարմիր Խաչին, Կապոյտ Խաչին, Աղքատախնամին, Եկեղեցւոյ Կրթ. գործերուն, «Հայ–Բոյժ»ին: Գումար հարիւր Ն. Ֆ.): Ստանալ Յառաջ)էն:

ՍԱՐՍԷԼ.— Հ. Յ. Դ. «Վարդան» ենթակոմիտէն սրտի խոր ցաւով կը ծանուցանէ իր գործօն ընկերոջ՝

ՕՆՆԻԿ ԿԱՐԱՊԵՏԵԱՆԻ

մահը, որ տեղի ունեցաւ Մարտ 31ին, Փարիզի Հօթէլ Տիըի հիւանդանոցին մէջ:

Յուղարկաւորութեան մանրամասնութիւնները յաջորդով:

Պ. Արմենակ Գասպարեան (Ամերիկա), Տէր եւ Տիկին Յակոբ Գասպարեան (Ամերիկա), Տիկին Նուարդ Պէզազեան (Փարիզ), Տիկին Հայկանոյշ Բաղտասարեան (Փարիզ), Տիկին Սաթենիկ Զաքարեան (Փարիզ), Տէր եւ Տիկին Հայկազ Պէզազեան (Փարիզ), Տէր եւ Տիկին Վահագ Պէզազեան (Փարիզ), Պ. Վահագ Բաղտասարեան (Փարիզ), Տէր եւ Տիկին Զաքէոս Զաքարեան (Հայաստան), Տէր եւ Տիկին Վաղարշակ Տէր Վարդանեան (Մարսէյլ), խոր ցաւով կը ծանուցանեն իրենց քենիին, մօրաքրոջ, հօրեղբօր աղջկան եւ ազգականին

ՍԻՐԱՆՈՅՇ ԶԱՔԱՐԵԱՆԻ

մահը, որ տեղի ունեցաւ Մարտ 29ին, ժամը 10ին Թիմոնի հիւանդանոցը, 65 տարեկան հասակին: Թաղման տխուր արարողութիւնը պիտի կատարուի 1 Ապրիլ, 1960, Ուրբաթ առաւօտ ժամը 10ին, Պոմոնի Հայոց եկեղեցին:

Մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել:

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այրի Տիկին Սիրանուշ Գուրուլեան եւ զաւակները հոգեհանգստեան պաշտօն կատարել պիտի տան յառաջիկայ Կիրակի 3 Ապրիլ, Ալֆորվիլ Ս. Պ. Պ. Եկեղեցւոյ մէջ, իրենց ամուսնոյն եւ հօր՝ Հանգուցեալին յիշատակը յարգողներէն կը խնդրուի ներկայ գտնուիլ:

Imprimerie Spéciale du journal « Haratch »



## ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Սէնթ Էթիէնի «Բարգէն Սիւնի» խումբի կողմէ, 2 Ապրիլ, Շաբաթ ժամը 21էն մինչեւ լոյս, Փէրկոլա (Ռոն Փուէն) շքեղ սրահին մէջ, Անտրէ Քոնսթան եւ Ֆրէտ Պովի անուանի զոյգ նուագախումբերը պիտի սաեղծեն չատ հաճելի ժամեր եւ զանազան անակնկալներ: Հայկական մթնոլորտ եւ առատ կերուխում:

### ԿԱՊՈՅՏ ԽԱՉ

Հրաւէր Միջմասնաճիւղային ժողովի

Ֆ. Կ. Խաչի Կեդր. վարչութիւնը ստիպողաբար ժողովի կը հրաւիրէ Փարիզի շրջանի տասը մասնաճիւղերը յառաջիկայ Բշ. օր 4 Ապրիլ ժամը 16 – 18 «Ռեժան» սրճարանի վերնայարկը, մէթրօ Քատէ:

Մասնաճիւղերու պարտաւորիչ ներկայութիւն:

## ԳԻՆԵՃՕՆ

Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Սէնթ Էթիէնի «Բարգէն Սիւնի» խումբը իր ակումբին պաշտօնական բացումին առթիւ, Ապրիլ 2, Շաբաթ ժամը 19ին, կազմակերպած է գինեճօն մը, որուն սիրով կը հրաւիրուին շրջանի ընկերներն ու բոլոր այն ազգայինները, որոնք կը հետաքրքրուին Նոր Սերունդի շարժումով ու գործունէութեամբ:

Գեղարուեստական բաժին:

## ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ

Դպրոցասէր Տիկնանց վարժարանի աշակերտուհիներու կողմէ:

Ապրիլ 3ին, Կիրակի կէսօրէ վերջ ժամը 15ին, Մէզոն տը լա Շըմիի մէջ, 28պիս, Րիւ Սէն Տօմինիք, մէթրօ Էնվալիտ:

Հայերէն եւ ֆրանսերէն թատերախաղեր: Երգախառն պատկերներ եւ արտասանութիւն:

Մուտք՝ 6, 5 եւ 3 Ն. Ֆ.:

## ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ԵՒ ՇՔԵՂ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Նախաձեռնութեամբ Ֆ. Կապ. Խաչի Լիոնի մասնաճիւղի:

Այս Շաբաթ երեկոյեան ժամը 9էն մինչեւ լոյս, Պէրիէ Միյէ շքեղ սրահներուն մէջ, Փլաս Պէլքուր:

Գեղարուեստական բաժին եւ հաճելի անակնկալներ: Պիտի երգէ Տիկին Արաքսի Մուրատեան (Փարիզէն), իրենց մասնակցութիւնը կը բերէ Տէր եւ Տիկին Մութավէլեանի պարախումբը, Վալս էմփերիալ, Ֆրէնչ քանքան եւ հայկական պարերով: Ինչպէս նաեւ Թարարէն Հաբէլեան եղբայրներ պիտի նուագեն ու երգեն հայկական եղանակներ:

Ընտանեկան ուրախ զուարթ մթնոլորտ:

### ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ ՊՈՐՏՈՅԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ խումբ մը սիրողներու, կը բեմադրուի՝

«ՁԱՐՇԸԼԸ ԱՐԹԻՆ ԱՂԱ»Ն

(Կատակերգութիւն 3 արար)

Այս Կիրակի ժամը 15ին, Շամպր տը Քոմերսի ընդարձակ սրահը, 8, Րիւ Տէ Քրուա Պանի, Պորտօ:

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ներկայացուցչական ժողովի կը հրաւիրէ Փարիզի եւ շրջաններու, մարմիններու եւ խումբերու ներկայացուցիչները, այսՇաբաթ, ժամը 21ին, Մշակոյթի Տան մեծ սրահին մէջ: ԿԱՐԵՒՈՐ ՕՐԱԿԱՐԳ:

## ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ
### ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

Կազմակերպուած Հ. Մ. Ը. Մ.ի կողմէ:

Ապրիլ 2ին, Շաբաթ երեկոյեան ժամը 21ին: Առնոնվիլի մեծ սրահին մէջ:

(Փառք էքսփոզիսիոն):

Այս առթիւ վարձուած է տեղւոյս հանրածանօթ Ժիլ Տօլայի նուագախումբը:

Կը հրաւիրուին Կեդր. Ֆրանսայի քոյր մասնաճիւղերուն հայ մարզիկները:

## ՄԵԾ ՊԱՏԱՀԱՆԴԷՍ
### ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Կազմակերպուած ԱՐԾԻՒ Մարզական Միութեան կողմէ: Այս Շաբաթ երեկոյեան ժամը 22էն մինչեւ լոյս, Ալհամպրայի մեծ սրահին մէջ:

**Eddy Warner**

Եւ իր նուագախումբը (Փարիզէն)

**Cotillons**

Հաճելի մթնոլորտ, անակնկալներ:

### ԸՆՏԱՆԵԿԱՆ ԽՆՋՈՅՔ

Կազմակերպուած Կապ. Խաչի Վիէնի մասնաճիւղին կողմէ: Այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին, Համօ Օհանջանեան սրահին մէջ:

Գեղարուեստական խնամուած բաժին: Կիւլպէնկ (Կիւլը) սիրայօժար մասնակցութիւնը կը բերէ իր փանթէզիներով:

Մուտքը ազատ է:

### ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ԿԱՅԱՆ
### ՄԱՐՍԷՅԼ

Պզտիկներու արձանագրութիւնները պիտի սկսին Ապրիլ մէկին եւ պիտի փակուին Մայիսի վերջը:

Այն ծնողքները որոնք կ'ուզեն արձանագրել տալ Կապ. Խաչին, Դիմել հետեւեալ հասցէներուն:

Մարսէյլի քաղաք Տիկին Թութէլեանի, 4 Րիւ Փարմանթիէ, Պոմոն, Տիկին Տօլպաչեանի 23 Պուլվ. տը Պօմոն, Տիկին Շալճեան Սէն Ժերոմ:

## ՀԱՅԱՍՓԻՒՌՔԻ ՄԱՍՆԱՇԵՆՔԻՆ ԱՌԹԻՒ

## ՀԱՅԱԾԷՍ Ս. ՊԱՏԱՐԱԳ
### ՎԱՏԻԿԱՆԻ ՁԱՅՆԱՍՓԻՒՌԷՆ

Այս Կիրակի 3 Ապրիլ, ժամը 10·30ին, հայկական հանդիսաւոր Ս. պատարագ եւ քարոզ՝ Վատիկանի ձայնասփիւռէն:

Պիտի քարոզէ Գեր. Ներսէս Վրդ. Սեթեան՝ Տեսուչ Հռոմի Լեւոնեան հայ վարժարանի: Միջին ալիք՝ 196 մ., կարճ ալիք՝ 19·84, 25·67, 31·10:

Այրի Տիկ Օ. Կարապետեան, այրի Տիկին Ե. Ֆերմանեան, Տէր եւ Տիկ. Ա. Ֆերմանեան եւ զաւակները, Տէր եւ Տիկ. Ղ. Գամբարեան եւ զաւակները, Տէր եւ Տիկ. Զ. Կիւլպատրեան եւ զաւակները, Տէր եւ Տիկ. Մ. Պօղոսեան եւ զաւակը, Տէր եւ Տիկ. Ռ. Պահատուրեան, Տէր եւ Տիկ. Նաճարեան, Պ. Շ. Ֆերմանեան եւ համայն Կարապետեան ընտանիքը, ընկերները եւ բարեկամները սրտի խոր վիշտով կը յայտնեն իրենց ամուսնոյն, եղբօր, քեռայրին եւ ազգականին

ՕՆՆԻԿ ԿԱՐԱՊԵՏԵԱՆԻ

կսկծալի մահը 31 Մարտին, Օթէլ Տիէօյի հիւանդանոցին մէջ (60 տարեկան):

Յուղարկաւորութիւնը պիտի կատարուի Փարիզի Հայոց եկեղեցին, 15 Ռիւ Ժան Կուժոն, այս երկուշաբթի ժամը 16ին, ուրկէ մարմինը պիտի փոխադրուի Փանթէնի գերեզմանատունը, ամփոփուելու համար ընտանեկան դամբարանին մէջ:

Մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել:

ՎՐԻՊԱԿ.— «Յառաջ»ի Ապրիլ 2ի թիւին մէջ, Գ. էջ Գ. սիւնակ, տպագրական սխալի մը արդիւնքով, 2 տողեր կրկնուած են: 37րդ տողէն սկսեալ կարդալ.—

Ճաշէն ետք, վարժարանի Ոսկեմատեանին մէջ արձանագրեց հետեւեալ խօսքերը. «Յանկանում եմ Մխիթարեան վարժարանին մեծ յառաջդիմութիւն, յաջողութիւն եւ նոր նուաճումներ»:

## ՀԱՃԵԼԻ ՆՈՐՈՒԹԻՒՆ ՄԸ

Մուրատ – Ռափայէլեան Նախկին Սանուց Միութիւնը ամէն ամիս կը կազմակերպէ երեկոյթ մը:

Առաջինը՝ Շաբաթ 9 Ապրիլ ժամը 21ին

167. RUE MONMARTRE

au sous-sol de la Casita

Պար, Երգ, Հաճելի մթնոլորտ

կը մասնակցի ՊԵՌՆԱՐ ՏԷՏԷՃԵԱՆ

ԱՐՄԵՆԻԱ

նուագախումբով:

## ԾԱԽՈՒ Է ՓԱՎԻՅՕՆ ՄԸ

Ռոնի–Սու–Պուայի մէջ, 3 սենեակ, խոհանոց, տուշ, գազ, ամէն յարմարութիւնով օժտուած: 20 մեթր ճակատ, 63 մեթր երկարութիւն, ընդամէնը 900 քառակուսի մեթր, շատ լաւ մշակուած, պտղատու ծառերով պարտէզ: Մանրամասնութեանց համար հեռաձայնել Տիկին Պարսամեանի՝

Tel. : MON. 15-75

## ԱՊՐԻԼ 11-24 Ը ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

Կ'ոգեկոչուի Ապրիլ 24ին:

Նախաձեռնութեամբ Ապրիլեան Սերունդի, Սալ Բատէի մէջ:

×

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՍԳԱՏՕՆԸ ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

Կազմակերպուած Վալանսի Հայ Ազգ. Միութեան կողմէ եւ հովանաւորութեամբ երեք Ցարանուանութեանց պետերուն:

Ապրիլ 9, Շաբաթ երեկոյ ժամը ճիշդ 9ին, Թէաթր Միւնիսիփալի սրահին մէջ:

Կը նախագահէ Հայ Ազգ. Միութեան նախագահ Պ. Գ. ՍԻՆԱՊԵԱՆ

Ֆրանսերէն խօսք կ'առնէ Պ. ԼԵՒՈՆ ՄԱԹԷՈՍԵԱՆ:

Կը խօսին ՏԷՐ ՍԱՀԱԿ ԱՒԱԳ ՔՀՆՅ. ՊԱՊԻԿԵԱՆ: ՎԵՐԱՊ. ԱԲՐԱՀԱՄԵԱՆ, եւ ՊԱՊԵԱՆ վարդապետ:

Օրուան բանախօս՝ Պ. Ս. ՔԱՄԵԱՆ:

Ազգ. Միութիւնը կոչ կ'ուղղէ Վալանսի եւ շրջակայից հայ գաղութին բոլոր հայրենակիցներուն, որ իրենց ներկայութեամբ, յարգանքի տուրքը մատուցանեն մեր մէկ միլիոնէ աւելի անթաղ նահատակներուն, եւ ոգեկոչեն անոնց անմահ յիշատակը:

### ԼԻՈՆԻ ՄԷՋ

Համազգային Սգատօնը Ապրիլ 24ին: Միահամուռ մասնակցութեամբ գաղութին: Մանրամասնութիւնները յաջորդով:

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉ

Հրաւէր Միջմասնաճիւղային ժողովի

Ֆ. Կ. Խաչի Կեդր. վարչութիւնը ստիպողաբար ժողովի կը հրաւիրէ Փարիզի շրջանի տասը մասնաճիւղերը յառաջիկայ Բշ. օր 4 Ապրիլ ժամը 16 – 18 «Ռեժան» սրճարանի վերնայարկը, մէթրօ Բատէ:

Մասնաճիւղերու պարտաւորիչ ներկայութիւն:

## ԳՈՐԾ ԿԸ ՓՆՏՌԷ

Հայ երիտասարդ կին մը սպասուհիի գործ կը փնտռէ հայ ընտանիքի մը մօտ, բնակութիւնով միասին: Ունի նաեւ հինգ տարեկան մանչ մը:

Դիմել՝

Mme. Angèle TAYRAN

18, Rue Anatole France Noisy le-Sec

## Կ'ՈՒԶՈՒԻ

15–16 տարեկան աշկերտ մը որ ներկայացուի ծնողքին կողմէ: Սկզբնական վճարում (շաբաթական) 60 Ն. Ֆ., երեք ամիս ետք՝ յաւելում: Դիմել՝



Imprimerie Spéciale du journal « Haratch »

# ՀԱՅԿԱԿԱՆ ԵՐԱԺՇՏՈՒԹԵԱՆ ՓԱՌԱՏՕՆ

| ՄԱՐՍԷՅԼ, 16 ԱՊՐԻԼ ԺԱՄԸ 20,45ԻՆ | ԼԻՈՆ, 17 ԱՊՐԻԼ ԺԱՄԸ 14.30ԻՆ |
|---|---|
| Salle Verdi - Casa d'Italia<br>Rue d'Alger | Salle Rameau |

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻՆ ԿՈՂՄԷ

ՄԱՍՆԱԿՑՈՒԹԵԱՄԲ

ՍԻՓԱՆ - ԿՈՄԻՏԱՍ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻՆ

ԵՒ ORCHESTRE SYMPHONIQUE DE LA R.T.F. Ի

Մեներգողներ: Օր. ԱՍՏՂԻԿ ԱՌԱՔԵԼԵԱՆ, Պ. ԱՐԱ ՍԵՐՈԲԵԱՆ, Պ. ՄԿՐՏԻՉ ՊՕՂՈՍԵԱՆ

ՂԵԿԱՎԱՐՈՒԹԵԱՄԲ Կ. ԱՓՐԻԿԵԱՆԻ

Կը խնդրուի ճշդապահ ըլլալ

## ՅՈԲԵԼԵՆԱԿԱՆ ՀԱՆԴԷՍ-ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Դերասան՝ ՏՐԴԱՏ ՆՇԱՆԵԱՆԻ

50ամեայ բեմական գործունէութեան ի պատիւ

Նախաձեռնութեամբ՝ Պէլվիլ – Լիլա դպրոցներու կրթական մարմնոյն եւ բարձր հովանաւորութեամբ կաթ. պատ. ՍԵՐՈՎԲԷ ԵՊՍ. ՄԱՆՈՒԿԵԱՆԻ

Նախագահ՝ ԱՐՄԵՆԱԿ ՀԱՄԲԱՐՁՈՒՄԵԱՆԻ

9 Ապրիլ, Շաբաթ գիշեր ժամը 20.45ին Փօլ Ֆարալիք թատրոնին մէջ,

21, RUE YVES TOUDIC

Փարիզահայ բեմի գլխաւոր ուժերու մասնակցութեամբ կը ներկայացուի

### ԼԱԲԻՒՐԻՆԹՈՍ

Փարիզահայ կեանքէ, քոմէտի – տաամ 3 արար Տ. ՆՇԱՆԵԱՆԻ

Մանրամասնութեանց համար տեսնել յայտագիրը:

Տոմսերը կը ծախուին միայն Հրանդ Բալուեան գրատունը 43 րիւ Ռիշէ Փարիզ, Հեռ. ՓՌՕ. 25 – 46:

գից, երկու անգամ չափից սենեակի երկայնքը եւ կանգնեց հայելու դէմ: Հայելուց նայում էր նրան երեսունհինգ մա – մուլանոց ձեռագիր վէպի վաստակաւոր հեղինակի ոգեշնչուած դէմքը: Արդէն ուշ գիշեր էր, հանուեց եւ անկողին մտաւ:

... Նստել է նա, վիպասանը, պետա – կան հրատարակչութեան դիրեկտորի կաբինետում: Սեղանի վրայ նրա վէպն է:

— Քանի՞ մամուլ է, — հարցնում է դիրեկտորը:

— Երեսունհինգ մամուլ:

Դիրեկտորը ժպտում է:

— Ափսո՛ս, — ասում է նա, եւ ժպիտն անհետանում է նրա դէմքից:

— Ինչո՞ւ ափսոս, — հարցնում է հեղինակը:

Դիրեկտորն աւելի է լրջանում:

— Կայ նոր կարգադրութիւն, — ար – տասանում է նա հատիկ հատիկ, — մինչեւ տասնըհինգ մամուլնոց վէպերին վճարել մամուլին հինգ հազարի հաշուով, իսկ բարձր՝ մամուլին հազար ռուբլի միայն:

Տիրում է ծանր, պետական, հրատա – րակչական լռութիւն:

— Գիտէ՞ք ինչ, — լռութիւնը խախ – տում է վերջապէս վիպասանը, — ան – կեղծ ասած, իմ վէպը սարսափելի ձգձըգուած է, կան բազմաթիւ կերպարներ, որոնք չգիտես ինչու տեղ են գտել վէպում եւ քարշ են գալիս մամուլից մամուլ, հանդիպում են իրար, խօսում են, չա – ղակրատում, ապացուցում են վաղուց ապացուցուած ճշմարտութիւններ, հիմ – նական սիւժէին զուգընթաց քարշ են գալիս զուգահեռ ենթասիւժէներ, որոնք օգնում են քանակին եւ ոչ թէ որակին... Մի խօսքով, տանում եմ վէպս՝ կարգի բերեմ:

— Ո՞րքան պիտի կարգի բերես, — հարցնում է դիրեկտորը:

— Ո՞րքան... Մինչեւ տասնըհինգ մամուլ:

— Կեցցե՛ս, — բացականչում է դիրեկտորը, — վերջապէս մենք կ'ունենանք մի լաւ վէպ: Գալով հոնորարին... ոչ մի նոր կարգադրութիւն չկայ ի հարկէ, ես այնպէս...

— Ի՞նչ, — չանթահարուած գոռում է վիպասանը, եւ լսելով իր ձայնը՝ զարթնում:

3. ԶԻԳԶԱԳՆԵՐ

Տարիներ առաջ ես բուժւում էի Հիւսիսային Կովկասի առողջարաններից մէկում: Ստամոքսի խոցը հանգիստ չէր տալիս ինձ: Վաղուց հրաժեշտ էի տուել ես մսեղէնին, խմիչքների բոլոր տեսակներին եւ այնքան կաթնեղէն էի գործածել, որ իմ մասին կարելի էր իրաւացիօրէն ասել՝ բերանից կաթնահոտ է գալիս: Ինձ բուժող բժիշկը՝ Իւան Անդրէիչը մի յաղթանդամ եւ կենսուրախ անձնաւորութիւն, գրեց իմ «հիւանդութեան պատմութիւնը», լուսանկարել տուեց ստամոքսս, որոշեց խոցի տեղն ու որպիսութիւնը, նշանակեց սրսկումներ, դեղեր սնունդ եւ ամենայն բարեխղճութեամբ ձեռնամուխ եղաւ իմ բուժմանը: Հետաքրքիր մարդ էր Իւան Անդրէիչը, մենք յաճախ հանդիպում էինք զբօսայգում, շրջում էինք նրա ծառուղիներում, նըստում կանաչ նստարաններից մէկի վրայ եւ խօսում աշխարհի գործերից, կեանքի չար ու բարուց:

Մի անգամ ես հրաւիրեցի նրան կաֆէ-ռեստորան:

— Օ՜, ո՛չ, — լրջացաւ նա, քեզ խմել կամ ռեստորանային ճաշեր ուտել չի կարելի:

Ես նրան բացատրեցի, որ ռեստորանը կաֆէ-ռեստորան է, հետեւաբար ես կարող եմ ինձ համար պատուիրել անվնաս բաներ, իսկ նրա՛ հիւրասիրել ինչ որ սիրտը կ'ուզէ: Պատասխանելու փոխարէն Իւան Անդրէիչը վեր կացաւ տեղից եւ մենք մեր քայլերն ուղղեցինք դէպի կաֆէ ռեստորան: Այստեղ նա պատուիրեց խորոված, ես՝ 250 գրամ կաթի սեր, նա՝ կէս շիշ օղի, ես՝ յիսուն գրամ կարագ, եւ սկսուեց խնջոյքը: Իւան Անդրէիչի տրամադրութիւնը բարձրացաւ:

— Ճիշդն ասած՝ իմ արածը խողութիւն է, ես օղի եմ խմում, իսկ դու՝ սեր: Սա կարգ ու կանոն չէ: Արի կամ ես անցնեմ սերին, կամ դու՝ օղուն...

Երբ շիշը կիսուել էր, նա մի ծխախոտ վառեց եւ ասաց.

— Ի հարկէ, լաւ է, որ դու ոչ խմում ես, ոչ ծխում, ես շատ գոհ եմ քեզնից, բայց գիտես, միատեսակ սնունդը բթացնում է օրկանիզմը, թուլացնում է նրա գործունակութիւնը: Անհրաժեշտ են երբեմն զիգզագներ, այո՛, այո՛, անհրաժեշտ են եւ օգտակար:

Իւան Անդրէիչը ազատ ըմպանակը լըցրեց օղիով, պարզեց ինձ եւ առարկութիւն չվերցնող հեղինակաւոր տոնով հրամայեց.

— Ընդունի՛ր:

Ճիշդ այդ ազդեցիկ տոնով նա մի քանի անգամ ինձ դեղեր էր տուել խմելու:

Այս անգամ էլ ես ենթարկուեցի:

— Իսկ հիմա, սիրելի բարեկամ, կուլ տուր այս խորովածի կտորը: Մի վախենա, խորովածից դեռ ոչ ոք չի մահացել:

Սեղանն աշխուժացաւ: Իւան Անդրէիչը լրացուցիչ խորոված պատուիրեց, չմոռանալով օղին:

— Խմիր, բժիշկների հէրն եմ անիծել, — գոռում էր նա արդէն հարբած, — ծխի՛ր... զիգզա՛գ...

Զիգզագի ուժը ես զգացի այն ժամանակ, երբ մենք դուրս եկանք կաֆէ-ռեստորանից եւ ուղեւորուեցինք դէպի մեր սանատորիան: Մենք զիգզագներ էինք գծում ճանապարհին եւ երգում ինչ որ երգեր, որոնք դժուար թէ հիմք ծառայէին ապացուցելու, որ մեր երաժշտական լսողութեան եւ զգացողութեան մակարդակը մի ինչ որ չափով բանի նման է:

Այդ գիշեր իմ բժիշկը պիտի հերթապահէր:

Կէս գիշերին ես զարթնեցի ստամոքսի խիթերից: Հերթապահ քոյրը վազեց հերթապահ բժիշկի ետեւից եւ վերադարձաւ մենակ: Նրան չէր յաջողուել զարթնեցնել բժիշկին: Քոյրը տուեց ինձ զանազան թմրեցուցիչ դեղեր, կատարեց ինչ որ սրսկում, իսկ վաղ առաւօտեան ես ներկայացայ իմ բժիշկի աչաւոր դատաստանին: Նա տարակուսանքով վեր քաշեց ուսերը:

— Զարմանալի բան, ինչո՞ւ պիտի ցաւեր զգայիր: Երէկ դու չխմեցիր...

— Խմեցի, բժիշկ, խմեցի, — անկեղծօրէն խոստովանեցի ես:

— Խմեցի՞ր, — զարմացաւ բժիշկը, — իսկ ես ոչինչ չեմ յիշում... — Նրա դէմքի արտայայտութիւնը սառն էր եւ պաշտօնական, — իսկ ինչո՞ւ խմեցիր, — հարցրեց նա անկեղծ վրդովմունքով, — ո՞ր սատանան քեզ մոլորեցրեց:

— Իւան Անդրէիչ, — ասացի ես նրան, — իմ բժիշկներից մէկը տարիներ առաջ ինձ ասաց, որ միատեսակ սնունդը բթացնում է օրկանիզմը, թուլացնում նրա գործունակութիւնը, անհրաժեշտ են երբեմն զիգզագներ, որ մի կտոր խորովածից դեռ ոչ ոք չի մահացել... Եւ ահա, երէկ երեկոյեան, ձեզ հետ...

— Ես քո այդ զիգզագագէտ բժիշկին հէրն եմ անիծել, — գոռաց իմ բժիշկը արդարացի ցասումով, — վերջին անգամ լինի:

Վերջին անգամ եղաւ:

ԳՈՒՐԳԷՆ ՄԱՀԱՐԻ

## ԳԱՂՈՒԹԷ ԳԱՂՈՒԹ

ԵՐՈՒՍԱՂԷՄԷՆ կը հեռագրեն «Յու – սաբեր»ի Մարտ 26 թուականով թէ Եղիշէ արքեպ. Տէրտէրեան վերադարձած է վանք: (ԽՄԲ.— Երուսաղէմի անցուդարձերուն մասին պիտի տանք կարգ մը տեղեկութիւններ՝ քաղելով արեւելքի հայ թերթերուն թղթակցութիւններէն):

ՊԷՅՐՈՒԹԻ «Փալանճեան» Ճեմարանի Մատենադարանին կարեւոր նուէր մը եղած է վերջերս: Գրագէտ եւ վաստակաւոր դաստիարակ – ուսուցիչ Եդուարդ Տարօնեան նուիրած է իր անձնական գրադարանը, աւելի քան 500 հատոր հայերէն եւ ֆրանսերէն թանկարժէք գիրքեր: Այս առթիւ Ճեմարանի տնօրէն Ս. Վրացեան շնորհակալութեան նամակ մը ղրկած է Ե. Տարօնեանի: Մատենադարանը ներկայիս ունի աւելի քան 10.000 հատորներ՝ զանազան լեզուներով:

ՊԱՐՍԿԱՍՏԱՆԻ մէջ Յովիկ Ալլահ – վերտեան պարսկերէնի թարգմանած է Լեւոն Շանթի «Հին աստուածները»:

ՄԻԼԱՆԻ մէջ, մեր երիտասարդ բժիշկներէն Տօքթ. Բագրատ Եղիազարեան դասախօսութիւն մը տուաւ Փետր. 14ին, քաղաքին Հայ Տան մէջ, նիւթ ունենալով «Սփիւռքի Հայութեան պարտականութիւնները Հայաստանի հանդէպ»:

ԱՄԷՆԷՆ ՏԱՐՕՐԻՆԱԿ ԲԱՆԱԿԸ

## ԶՈՒԻՑԵՐԱԿԱՆ ԲԱՆԱԿԸ

●

Այսօր, աշխարհի ամէնէն տարօրինակ բանակը, անտարակոյս զուիցերական բանակն է: Հարեւան երկիրներու զանգուածներուն մէջ խրած եւ Եւրոպայի լեռնային ամենամեծ զանգուածին վրայ թառած այս փոքր պետութեան չէզոքութիւնը պէտք չէ մտածել տալ թէ Զուիցերացիք կռուելու անատակ եւ կամ պատերազմիլ չուզող մարդիկ են: Իրականութիւնը ճիշդ հակառակն է: Զուիցերիա պատերազմական մեծ աւանդութիւն ունի: Ապացոյցը այն իրողութիւնն է, որ մինչեւ ֆրանսական Յեղափոխութիւնը, ֆրանսացի թագաւորներուն անձնապահները զուիցերացի էին, իսկ մինչեւ այսօր Վատիկանի եւ Պապին մասնաւոր պահակազունդը կը բաղկանայ միա՛յն Զուիցերացիներէ: Ակէ զատ՝ դարեր շարունակ Զուիցերացիք յամառօրէն եւ յաջող կերպով պատերազմած են այն զանազան աշխարհակալներուն դէմ, որոնք փորձած են Զուիցերիան նուաճել:

×

Ճշմարտութիւն է նաեւ, թէ երկրի մը աշխարհագրական կազմը դժուար թէ ա՛յնքա՛ յարմար ըլլայ ժողովուրդի մը մարտական ոգիի պահպանման: Զուիցերացիք, Ալպեան լեռներուն վրայ ապրելով, բոլորն ալ սքանչելի «սփորթըմէն»ներ են եւ մասնագէտ՝ լեռնարշաւի դժուարին եւ վտանգաւոր սփորին մէջ: Վարժուած են բնութեան տարերքը դիմագրաւելու եւ գիւղական կեանքի յոգնութեանց ու կեանքին հանդուրժելու: Սակայն, այսքան տարիէ ի վեր պատերազմած չըլլալով հանդերձ, երբեք մարզուելէ չեն դադրած եւ իրենց երկրին հարստութիւնը զիրենք թուլամորթ չէ դարձուցած:

Իբրեւ իմաստուն մարդիկ, Զուիցերացիք միայն բնութեան չեն ձգած իրենց մարզումը: Զուիցերիա, հակառակ իր պատերազմական նախապատրաստութեանց գաղտնի պահուելուն, յայտնի է թէ ունի, իր բնակչութեան բաղդատմամբ, ոչ միայն բազմամարդ, այլ նաեւ կռուի շատ վարժ բանակ մը:

×

Զուիցերական բանակին տարօրինակութիւնը՝ իր կազմին մէջ է: Մնայուն են միայն ղեկավարները: Իսկ զինուորները իրենց տուները կը մնան միշտ: Այսուհանդերձ, ռազմափորձերու շրջանին, ամէն օր, զինուորները իրենց զէնքը կ'առնեն, համազգեստը կը հագնին եւ կ'երթան հոն, ուր գիտեն թէ պիտի հաւաքուին: Այնպէս որ, անհրաժեշտութեան պարագային, Զուիցերիա մէկ քանի ժամէն կրնայ համախմբել իր ուժերը: Միւս կողմէ՝ ծանօթ է, որ իր անմատչելի լեռներուն վրայ, ամէն տեղ, հաստատած է հրետանիի բոյներ, գետնին տակ պահուած օդանաւակայաններ, ունի վերջին ձեւի օդամուղ սաւառնակներ, գնդացիրի գիրքեր եւ ամէն ինչ որ կրնայ անառիկ դարձնել փոքրիկ, բայց ամրոց երկիրը, որ կը սիրէ խաղաղութիւնը եւ սակայն միշտ պատրաստ է պատերազմի:

«ՅԱՌԱՋ»Ի ԹԵՐԹՕՆԸ (168)

# ԱՄԻՐԱՅԻՆ ԱՂՋԻԿԸ

ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

ՄՈԼՈՐՈՒՄԸ

Դ.

Սարսափէն պիտի չնուաղէր դարձեալ. ընդհակառակն իր վրայ ծռող այդ ահարկու եւ վայրենի գլուխէն փոխանակ սարսափելու, անոր պիտի փարէր, պիտի համբուրէր զայն, ապաշաւի արցունքներով պիտի ողողէր, «մեղա՛յ, մեղա՛յ, ներէ՛ ինծի, ներէ՛, Համբիկ», պիտի պաղատէր զոհին ականջին: Անկարելի էր որ անիկա շարունակէր իր անզգածութեանը մէջ մնալ, պիտի խանդաղատէր, պիտի յուզուէր ու արցունքները իր արցունքներուն խառնէր. գուցէ, — ո՛ անյուսալի ու երջանիկ պատահականութիւն — բարոյական յեղաշրջմամբ մը, ան նորէն դառնար առջի Համբիկը ըլլար, հեզ, անուշ, աղապատալից: Ու կորուած, ընդհատուած կեանք մը վերսկսէր իր բնական ընթացքը ապրիլ նորէն, կեանքը զիրար սիրող երկու էակներու, զորս մրրիկ մը բաժնած էր վայրկեան մը:

Ասանկ երազներ շա՛տ երազեց Սոֆի: Անկարելի, մտացածին դիպուածներ երեւակայեց, հոգեցունց եղերերգութիւններ որոճաց, ֆանթաստիկ պատկերներ կրկնեց, որոնց ամէնուն մէջ ալ երկու զոհերը իրենց հոգիին տանջանքներովը կը գալարուէին, ոչնչացած երջանկութեան ետեւէն վազելով հեւ ի հեւ, առանց երբեք անոր հասնելու:

Իր հոգեկան այս ալեկոծումներուն մէջ հանդարտութեան ցանցառ րոպէներ ալ կ'ունենար: Թօթափած ամէն խղճահարութիւն, ամէն սորջանք, միտքը պատող յուսահատութեան մշուշը վանելով, յանկարծ այնպէս կ'ուզէր հաւատալ թէ վիճակը, որուն այդքան խելայեղօրէն անձնատուր եղեր էր, մտացածին բան մըն էր լոկ, արդիւնքը իր ֆիզիքական տաղնապներուն ու հրահրուած երեւակայութեանը: Չէ՛, ինքը լքուած, ըկուած աղջիկ մը չէր: Տօքթորը անգիտակցութեան սովորական մէկ րոպէին այդ սխալը գործեր էր: Ան ապահովապէս զղջացած էր հիմակ, ու կը պատրաստուէր իր սխալը դարմանելու:

Ու նորէն, մերժուած սիրահարը մոռացութեան ու լքումի մշուշներուն մէջ անյայտ կ'ըլլար, ամիրային թոռան յաղթական երեւումին առջեւ ոչնչանալով: Սոֆի, ոգեւորուած, առաջացած, ոտքի կ'ելլէր, կը շրջէր իր սենեակին մէջ, գգուական ակնարկներով դէպի բոլոր առարկաները, զորս ջախջախելու տենդովը կ'այրէր քիչ առաջ:

— Չէ՛, չէ՛, կը մրմնջէր, տօքթորը չի խաբեր զիս, օ՜, անկարելի՛ է, անկարելի՛:

Ու սովորականին պէս, հայելիին առջեւ անցնելով, ձեռք կ'առնէր իր վարսերուն գիսակները, կը յարդարէր զանոնք երկարօրէն, պատրաստելով այն հրաշալի գլուխներէն մէկը որոնք իր դէմքին ամբողջ չքնաղութիւնը կ'արժեցնէր, իր էն գեղեցիկ պարեգօտներէն մէկուն մէջ կը կաղապարէր իր նիհար մարմինը. կարծես այն երջանիկ օրերէն մէկը ըլլար ուր ամիրային թոռը հասարակութեան հիացումին կ'ենթարկէր զինքը այնքան սիգացող պերճութեամբ մը:

Յետոյ հանըմին կը ներկայանար ճիշդ ինչպէս երբ տակաւին շնորհազրկութեան հարուածին չէր ենթարկուած: Գուրգուրալի խնամքով մը կը շրջապատէր ամիրային աղջիկը, մինչեւ իսկ յոյժ բնականօրէն տօքթորին խօսքը կը բանար:

— Հանըմ, տօքթորէն ի՞նչ լուր, նամակ կ'առնէ՞ք կոր... առո՞ղջ է, Փարիզի մասին ի՞նչ կը գրէ...

Ու հանըմը, իր ցնդածութեան խորունկէն մոռցած ամէն բան, իր զաւկին մտածումովը միայն յափշտակուած, անոր մասին շաղակրատելու այդ բարեդէպ առիթը չուզելով փացնել, անկէց ստացած նամակներուն պարունակութիւնը լուացարարուհիին աղջկանը կը հաղորդէր, տօքթորին գլորած սուտերուն մէկին վրայ հազար ալ ինքը դնելով, Սոֆիին ուրախութեան բացագանչութիւններէն ընդհատուելով տեւն տեւն:

— Պռա՛վօ, տօքթոր... ա՛հ, ի՞նչ կ'ըսէք, հանըմ... ո՛րչափ ուրախ եմ...

Ու յետոյ, անձկալից.

— Ե՞րբ պիտի գայ, հանըմ:

— Աղջիկս, անիկա հիմա մեծ փրոֆեսէօրներու հետ ժամանակ կ'անցընէ կոր: Իր գիտին շատ հաւներ են. ուրիշ գիտեր ալ պիտի ընէ... հիչ չուտով կը ձգե՞ն... Ա՛խ, ո՜վ գիտէ երբ պիտի գայ, կ'աւելցնէր տիկին Մարկոսեան աղեխարշ հառաչանքով մը:

Եւ իբր թէ բան մը չեղածի պէս, Սոֆի կը յանդգնէր խնդրելու տիկինէն որ իր յարգանքները հաղորդէր տօքթորին՝ յառաջիկայ նամակով:

ԵՐՈՒԱՆԴ ՍՐՄԱՔԷՇԽԱՆԼԵԱՆ

(Շար.)

ուստի անհրաժեշտ չէ զանազան կուսակցութիւններ ունենալ» :

Երեք դասակարգեր գոյութիւն ունին Խ. Միութեան մէջ:

Ա) Իրաւակարգին նպաստաւորեալները. — Կուսակցական պատասխանատու անձնաւորութիւններ (շուրջ՝ մէկ միլիոն): Ապահովութեան եւ արդարադատութեան պաշտօնեաներ (շուրջ 800.000), պետական մարմիններու անդամներ (շուրջ՝ 300.000): Բանակի սպաներ (շուրջ՝ 200 հազար): Ճարտարարուեստի եւ առեւտուրի վարիչներ (շուրջ՝ 700.000):

Բ) Միջին դասակարգ.— Համայնավար չարքայիններ (շուրջ՝ 8 միլիոն): Երիտասարդ համայնավարներու կազմակերպութեան անդամներ (շուրջ՝ 17 միլիոն): Արհեստակցական միութիւններու պաշտօնեաներ (շուրջ՝ 10 միլիոն):

Գ) Հարստահարուած իսկայ զանգուածը.— Բանուորներ եւ կոլխոզականներ, այսինքն խորհրդային ժողովուրդին ջախջախիչ մեծամասնութիւնը:

Լենին 1920ին կ'ըսէր. «Մեր մէջ մէկ կուսակցութիւն միայն երկրի գլուխը պիտի գտնուի, մնացեալները բանտերուն մէջ...»:

ԱՐՀԵՍՏԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆՆԵՐ. — «Այս ընկերութիւններուն հիմնական նպատակը պիտի ըլլայ ամէն տեսակի օժանդակութիւն բերել կուսակցութեան եւ պետութեան, որպէսզի այս վերջինները յաջողութեամբ գլուխ հանեն իրենց որոշումները» կ'ըսէր առիթով մը Վ. Կրիշին, ընդհանուր քարտուղարը խորհրդային արհեստակցական ընկերութիւններուն:

ԱՇԽԱՏԱՆՔԻ ԺԱՄ.— «Այս տարի 7 ժամեայ դրութիւնը պիտի հաստատուի». ըսաւ Խրուշչեւ: Արդ, մոռցած է ըսելու թէ Խորհ. Միութեան մէջ աշխատանքի շաբաթը վեց օր է ինչ որ կը նշանակէ շաբաթական 42 ժամ աշխատանք:

Ֆրանսայի մէջ 1936էն ի վեր աշխատանքի շաբաթը 40 ժամ է:

## ԱՊՐԻԼ 11-24 Ը ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

Կ'ոգեկոչուի Ապրիլ 24ին:

Նախաձեռնութեամբ Ապրիլեան Սեբուճդի, Սալ Քատէի մէջ:

×

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՍԳԱՏՕՆԸ

### ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

Կազմակերպուած Վալանսի Հայ Ազգ. Միութեան կողմէ եւ հովանաւորութեամբ երեք Յարանուանութեանց պետերուն:

Ապրիլ 9, Շաբաթ երեկոյ ժամը ճիշդ 9ին, Թէաթր Մունիսիփալի սրահին մէջ:

Կը նախագահէ Հայ Ազգ. Միութեան նախագահ Պ. Գ. ՍԻՆԱՊԵԱՆ

Ֆրանսերէն խօսք կ'առնէ Պ. ԼԵՒՈՆ ՄԱԹԷՈՍԵԱՆ:

Կը խօսին ՏԷՐ ՍԱՀԱԿ ԱԻԱԳ ՔՀՆՅ. ՊԱՊԻԿԵԱՆ: ՎԵՐԱՊ. ԱԲՐԱՀԱՄԵԱՆ, եւ ՊԱՊԵԱՆ վարդապետ:

Օրուան բանախօս՝ Պ. Ս. ՔԱՐԵԱՆ:

Ազգ. Միութիւնը կոչ կ'ուղղէ Վալանսի եւ շրջակայից հայ գաղութին բոլոր հայրենակիցներուն, որ իրենց ներկայութեամբ, յարգանքի տուրքը մատուցանեն մեր մէկ միլիոնէ աւելի անթաղ նահատակներուն, եւ ոգեկոչեն անոնց անմահ յիշատակը:

### ԼԻՈՆԻ ՄԷՋ

Համազգային Սգատօնը Ապրիլ 24ին: Միահամուռ մասնակցութեամբ գաղութին: Մանրամասնութիւնները յաջորդով:

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

ԿԱՊ. ԽԱՉԻ Կրընոպլի մասնաճիւղը՝ ողբացեալ Սահակ Տէր-Թովմասեանի կսկծալի մահուան առթիւ, ցաւակցութիւն կը յայտնէ ընկերուհիներ՝ Զ. Տէր-Թովմասեանի եւ Օր. Ֆ. Շէօհլէյեանի:

×

ԿԱՊ. ԽԱՉԻ Փորթ տ'Իթալիի մասնաճիւղը իր ցաւակցութիւնը կը յայտնէ ընկերուհիներ Զարուհի Տէր-Թովմասեանի եւ Ֆլօրա Շէօհլէյեանի՝ Սահակ Տէր-Թովմասեանի տխուր մահուան առթիւ:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

ԿԱՊ. ԽԱՉԻ Կրընոպլի մասնաճիւղը ի նպաստ իր դպրոցին շնորհակալութեամբ ստացած է Պ. Էսկինեանէ 14,25 Ն. Ֆ. եւ քանի մը նկարներ:

## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ ԱՊՐԻԼ 8ԻՆ

Կը վերջանայ Յառաջի վերհրատարակութեան 15րդ տարին: Պիտի խնդրէինք մեր բաժանորդներէն որ անյապաղ նորոգեն 1960 – 1961ի իրենց բաժանորդագրութեանշրջանը առանց սպասելու անհատական դիմումներու: Կը խնդրենք նաեւ այն բաժանորդներէն որոնք առկախ հաշիւներ ունին կարգադրել զանոնք առանց ուշացնելու:

Շնորհակալութիւն մեր բոլոր բաժանորդներուն որոնք իրենց կանխիկ եւ կանոնաւոր վճարումներով կը դիւրացնեն վարչութեան գործը:

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ

Մշակութային Ընկերակցութեան Փարիզի Մասնաճիւղի Վարչութեան ընտրութիւնը պիտի կատարուի Ապրիլ 9ին, շաբաթ գիշեր ժամը 8 ուկէսին, Մշակոյթի Տան մէջ, 17 Ռիւ Պլէօ: Ներկաներու թիւը մեծամասնութիւն պիտի նկատուի: Բոլոր անդամներէն կը խնդրուի ներկայ ըլլալ:

Ընտրութենէն ետքը տեղի պիտի ունենայ մտքերու փոխանակութիւն, զոր պիտի վարէ ընկեր Միրիճեան:

## ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ

### ԱՒԱԳ ՍՈՒՐԲ ՇԱԲԱԹՈՒՆ ԵՒ ՍՈՒՐԲ ԶԱՏԿԻՆ

### ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ

10 bis, Rue Thouin, PARIS

Կիրակի 10 Ապրիլ, Ծաղկազարդ. Ժամերգութիւն եւ ձայնաւոր պատարագ ժամը 10ին: Երեկոյեան ժամերգութիւն եւ դռնբացէք ժամը 16ին: Հանդիսաւոր պատարագ ժամը 17ին:

### ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

10 Ապրիլ կիրակի, Ծաղկազարդ: Առաւօտ. ժամերգութիւն ժամը 7,30ին: Պատարագ երկսեռ խումբով ժամը 10: Երեկոյեան Դռնբացէք: Ժամերգութիւն ժամը 5ին:

## ՀԱՃԵԼԻ ՆՈՐՈՒԹԻՒՆ ՄԸ

Մուրատ – Ռափայէլեան Նախկին Սանուց Միութիւնը ամէն ամիս կը կազմակերպէ երեկոյթ մը:

Առաջինը՝ Շաբաթ 9 Ապրիլ ժամը 21ին

167 RUE MONMARTRE

au sous-sol de la Casita

Պար, Երգ, Հաճելի մթնոլորտ

Կը մասնակցի ՊԵՌՆԱՐ ՏԷՏԷՃԵԱՆ

ԱՐՄԵՆԻԱ

նուագախումբով:

## ԸՆՏԱՆԵԿԱՆ ԽՆՋՈՅՔ

Սեբաստիոյ Դաւրայի Հայրենակցական Միութիւնը կազմակերպած է, Զատկուան առթիւ խնջոյք մը, Իսիի Խրիմեան դպրոցին մէջ, այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին:

Ճոխ պիւֆէ, երգ, արտասանութիւն, պար: Պիտի նուագեն արեւելեան նուագի մասնագէտ հայրենակիցներ՝ Միրիճան Շիրվանեան, Շմաւոն Պալեան:

Մուտքը ազատ է:



Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ՀԱՆԴԷՍ - ԽՆՋՈՅՔ

Հ. Յ. Դ. Փարիզի Ռոստոմ եւ Քրիստափոր խումբերու միացեալ հանդէսխնջոյքը՝ այս կիրակի կէսօրէ ետք ժամը 3ին, Փորթ տէ Լիլա, Լա Քէս տ'Էփարնեի սրահին մէջ, 32–34 Ավընիւ տը լա Փորթ տէ Լիլա:

Կը նախագահէ ընկ. Պ. ՉՊՈՒՔՃԵԱՆ

Կը խօսի ընկ. ԱՇՈՏ ԻՍԱՀԱԿԵԱՆ

Գեղարուեստական բաժնին կը մասնակցին՝ Տիկին Գարակէօզեան (արտասանութիւն), Տիկին Շաքէ Գալայճեան, Օր. Աստղիկ Քէօսէեան եւ ընկ. Մարտիրոս Գարակէօզեան (երգ):

Կը նուագէ ԹԱՌԻՍ ԳԱՐԵԳԻՆ:

Կը ներկայացուի զաւեշտ մը ընկ. ԵՐՈՒԱՆԴ ԳՐԻԳՈՐԵԱՆԻ կողմէ:

Առատ պիւֆէ՝ դիւրամատչելի գիներով:

Իջնել Մէթրօ Փորթ տէ Լիլա:

ՄՈՒՏՔԸ ԱԶԱՏ Է

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Ապրիլ 17ին ՄԱՐՍԷՅԼԻ Հ.Մ.Ը.Մ.ի Պարահանդէսը՝ Ալհամպրայի մէջ:

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՊԱՆԵԷՕ – ՔԱՇԱՆԻ «Արծիւ» ենթակոմիտէի ընկերական ընդհ. ժողովը այս ուրբաթ գիշեր՝ սովորական հաւաքատեղին: Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է:

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դաշնակցութեան «Վարանդեան» կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերները, այս ուրբաթ ժամը 20,30ին, Յոյներու սրահը: Կարեւոր օրակարգ:

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը այս չորեքշաբթի գիշեր, ժամը 21ին, Քատէի սրահը: Կը խօսի Հր. Բալուեան, նիւթ՝ «Արմէն Տիգրանեան եւ իր Դաւիթ Բէկ օփերան»: Երկրորդ մաս եւ վերջ: Պիտի տրուի այս ներկայացման երաժշտութիւնը: Կը հրաւիրուին լսարանականներն ու արուեստասէրները:

## ՀԱՆԴԷՍ - ԽՆՋՈՅՔ

ՔՐԻՍՏԱՓՈՐԻ

ՀԱՐԵՒՐԱՄԵԱԿԻՆ ԱՌԹԻՒ

*Հ. Յ. Դ. Փարիզի Ռոստոմ եւ Քրիս-տափոր խումբերու միացեալ հանդէս-խնջոյքը՝ այս կիրակի կէսօրէ ետք ժամը* 3*ին*, Փօրթ տէ Լիլա, Լա Քէս տ'էփար-ննըի *սրահին մէջ*, 32–34 Ավընիւ տը լա Փօրթ տէ Լէլա:

*Կը նախագահէ ընկ. Պ. ՋՊՈՒՔՃԵԱՆ*

*Կը խօսի ընկ. ԱՇՈՏ ԻՍԱՀԱԿԵԱՆ*

*Գեղարուեստական բաժնին կը մասնակ-ցին՝ Տիկին Գարակէօզեան (արտասանու-թիւն), Տիկին Շաքէ Գալայճեան, Օր. Աստղիկ Քէօսէեան եւ ընկ. Մարտիրոս Գարակէօզեան (երգ):*

*Կը նուագէ ԹԱՌԻՍ ԳԱՐԵԳԻՆ:*

*Կը ներկայացուի զաւեշտ մը ընկ. ԵՐ-ՈՒԱՆԴ ԳՐԻԳՈՐԵԱՆԻ կողմէ:*

*Առատ պիւֆէ՝ դիւրամատչելի գիներով:*

*Իջնել Մէթրօ Փորթ տէ Լիլա:*

*ՄՈՒՏՔԸ ԱԶԱՏ Է*

ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ

*ԱՒԱԳ ՍՈՒՐԲ ՇԱԲԱԹՈՒՆ*

*ԵՒ ՍՈՒՐԲ ԶԱՏԿԻՆ*

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

10 Ապրիլ կիրակի, Ծաղկազարդ: *Առաւօտ. ժամերգութիւն ժամը* 7,30*ին*: *Պատարագ երկսեռ խումբով ժամը* 10: *Երեկոյեան Դռնբացէք: Ժամերգութիւն ժամը* 5*ին*:

×

*Ս. ՅՈՎՀԱՆՆԷՍ–ՄԿՐՏԻՉ* (ՓԱՐԻԶ)

10 Ապրիլ, *կիրակի Ծաղկազարդ, ըս-կիզբն ժամերգութեան ժամը* 8*ին*, *հան-դիսաւոր քառաձայն պատարագ ժամը* 10*ին*, *երեկոյեան «Դռնբացէք» ժամը* 4,30*ին*:

×

*Ս. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ* (ՊՕՄՈՆ)

*Այս կիրակի* Ծաղկազարդ: *Առաւօտեան ժամերգութիւն ժամը* 8*ին*: *Պատարագ*՝ 10*ին*, *Դռնբացէք*՝ 17*ին*:

×

*Ս. ԹԱԴԷՈՍ* (*ՍԷՆԹ ԱՆԹՈՒԱՆ*)

10 Ապրիլ. *Կիրակի Ծաղկազարդ: Առաւօտեան սկիզբ ժամերգ. ժամը* 7,30*ին*: *Պատարագ*՝ 10*ին*: *Քարոզ*՝ 11*ին*: *Երեկոյեան Դռնբացէք*՝ 5*ին*:

×

*ԼԻՈՆԻ ԵԿԵՂԵՑԻ*

ԿԻՐԱԿԻ, *Ծաղկազարդ: Սկիզբ ժամը* 8*ին*: *Պատարագ* 10*ին*: *Դռնբացէք* 17*ին*:

*Կը խնդրուի հայ ժողովուրդէն որ հաճի իւղագինի իր մասնակցութիւնը բե-րել, արձանագրուելով տոմարին մէջ մասնաւոր նուիրատուութեան գումարնե-րով:*

×

*ՓՈՆ ՏԸ ՇԵՐԻ*

*ԾԱՂԿԱԶԱՐԴ այս կիրակի ժամը* 8,30*ին պատարագ ժամը* 10*ին*, *Դռնբացէք* 17*ին*: *Կը պատարագէ Օշին վարդ. Նիկոլեան:*

×

## ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ

10 bis, Rue Thouin, PARIS

Կիրակի 10 Ապրիլ, Ծաղկազարդ. *ժա-մերգութիւն եւ ձայնաւոր պատարագ ժա-մը* 10*ին*: *Երեկոյեան ժամերգութիւն եւ դռնբացէք ժամը* 16*ին*: *Հանդիսաւոր պա-տարագ ժամը* 17*ին*:

Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

*ՄԱՐՍԷՅԼ.— Վասպուրականի Հայրե-նակցական Միութիւնը իր վեթերան ըն-կերոջ՝ տարաբախտ Սահակ Տէր–Թովմա-եանի մահուան առթիւ* 30 *Ն. Ֆ. կը նուի-րէ Դպրոցասէր Տիկնանց վարժարանին:* (*Ստանալ «Յառաջ»էն*) *եւ* 30 *Ն. Ֆ. «Յառաջ»ի բարգաւաճման:*

ՀԱՄԱԶԳԱՅԻՆ

*Մշակութային Ընկերակցութեան Փա-րիզի Մասնաճիւղի Վարչութեան ընտրու-թիւնը պիտի կատարուի Ապրիլ* 9*ին*, *շա-բաթ գիշեր ժամը* 8 *ուկէսին*, *Մշակոյթի Տան մէջ*, 17 Ռիւ Պլէօ: *Ներկաներու թի-ւը մեծամասնութիւն պիտի նկատուի: Բոլոր անդամներէն կը խնդրուի ներկայ ըլլալ:*

*Ընտրութենէն ետքը տեղի պիտի ունե-նայ մտքերու փոխանակութիւն, զոր պի-տի վարէ ընկեր Միրիճեան:*

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

*Որբերու Օգն. Մարմինը կը ծանուցանէ թէ այս կիրակի առաւօտ Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցւոյ մէջ հո-գեհանգստեան պաշտօն պիտի կատարուի*

*ՏՈՒՔԹ. ԱՐԱՄ ՃԻՆՃԵԱՆԻ*

*մահուան տարելիցին առթիւ:*

*Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները:*

×

*Պօմոնի Կ. Խաչի մասնաճիւղի փափա-քին համաձայն, հոգեհանգստեան պաշ-տօն պիտի կատարուի վեթերան ընկերու-հի Տիկին ՆԱՐԿԻԶ ՔԻՊՐԻԹՃԵԱՆԻ մահ-ուան քառասունքին առթիւ, այս կիրակի, ժամը* 11,30*ին*, *Պօմոնի Ս. Գրիգոր Լու-սաւորիչ եկեղեցւոյ մէջ: Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները:*

## Հ. Յ. Դ.

ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

*Մարսէյլի Հ. Յ. Դ. «Զաւարեան» են-թակոմիտէի եւ «Յառաջ» խումբի միաց-եալ ընկերական ժողովը այս շաբաթ ժա-մը* 21*ին*: *Կարեւոր օրակարգ: Պարտաւո-րիչ ներկայութիւն:*

*ԱՎԻՆԵՈՆԻ «Մուրատ» խումբի ընկեր-ները ընդհ. ժողովի կը հրաւիրուին* 9 *Ապրիլ շաբաթ իրիկուն սովորական հա-ւաքատեղին: Ներկայ պիտի ըլլայ Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչը:*

*Բոլոր ընկերներու ներկայութիւնը ան-հրաժեշտ է:*

ԸՆՏԱՆԵԿԱՆ ԽՆՋՈՅՔ

*Սեբաստիոյ Դաւրայի Հայրենակցական Միութիւնը կազմակերպած է, Զատկուան առթիւ խնջոյք մը, Իսիի Խրիմեան դպրո-ցին մէջ, այս կիրակի կէսօրէ վերջ ժա-մը* 3*ին*:

*Ճոխ պիւֆէ, երգ, արտասանութիւն, պար: Պիտի նուագեն արեւելեան նուագի մասնագէտ հայրենակիցներ՝ Միրիճան Շիրվանեան, Շմաւոն Պալեան:*

Մուտքը ազատ է:

## ՀԱՃԵԼԻ ՆՈՐՈՒԹԻՒՆ ՄԸ

*Մուրատ – Ռափայէլեան Նախկին Սա-նուց Միութիւնը ամէն ամիս կը կազմա-կերպէ երեկոյթ մը:*

*Առաջինը՝ Շաբաթ* 9 *Ապրիլ ժամը* 21*ին*

167 RUE MONMARTRE

au sous-sol de la Casita

Պար, Երգ, Հաճելի մթնոլորտ

*Կը մասնակցի ՊԵՌՆԱՐ ՏԷՏԷՃԵԱՆ*

ԱՐՄԵՆԻԱ

*նուագախումբով:*

## ՅՈԲԵԼԵՆԱԿԱՆ ՀԱՆԴԷՍ-ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Դերասան՝ ՏՐԴԱՏ ՆՇԱՆԵԱՆԻ

50ամեայ բեմական գործունէութեան ի պատիւ

*Նախաձեռնութեամբ՝* Պէվվիլ – Լիլա *դպրոցներու կրթական մարմնոյն եւ բարձր հովանաւորութեամբ կաթ. պատ. ՍԵՐՈՎԲԷ ԵՊՍ. ՄԱՆՈՒԿԵԱՆԻ*

*Նախագահ՝ ԱՐՄԵՆԱԿ ՀԱՄԲԱՐՁՈՒՄԵԱՆ*

9 Ապրիլ, Շաբաթ գիշեր ժամը 20·45ին *Փօլ Ֆորլիք* թատրոնին մէջ,

21, RUE YVES TOUDIC

*Փարիզահայ բեմի գլխաւոր ուժերու մասնակցութեամբ կը ներկայացուի*

ԼԱԲԻՒՐԻՆԹՈՍ

*Փարիզահայ կեանքէ, քոմէտի – տրամ* 3 *արար Տ. ՆՇԱՆԵԱՆԻ*

*Մանրամասնութեանց համար տեսնել յայտագիրը:*

*Տոմսերը կը ծախուին միայն Հրանդ Բալուեան գրատունը* 43 բիւ Ռիշէ Փարիզ, *Հեռ. ՓՌՕ.* 25 – 46 :

# ՀԱՅԿԱԿԱՆ ԵՐԱԺՇՏՈՒԹԵԱՆ ՓԱՌԱՏՕՆ

| | |
|---|---|
| ՄԱՐՍԷՅԼ, 16 ԱՊՐԻԼ ԺԱՄԸ 20,45ԻՆ<br>**Salle Verdi - Casa d'Italia**<br>Rue d'Alger | ԼԻՈՆ, 17 ԱՊՐԻԼ ԺԱՄԸ 14·30ԻՆ<br>**Salle Rameau** |

*ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻՆ ԿՈՂՄԷ*

ՄԱՍՆԱԿՑՈՒԹԵԱՄԲ

ՍԻՓԱՆ - ԿՈՄԻՏԱՍ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻՆ

ԵՒ ORCHESTRE SYMPHONIQUE DE LA R.T.F. Ի

*Մեներգողներ* Օր. ԱՍՏՂԻԿ ԱՌԱՔԵԼԵԱՆ
Պ. ԱՐԱ ՍԵՐՈԲԵԱՆ
Պ. ՄԿՐՏԻՉ ՊՕՂՈՍԵԱՆ

ՂԵԿԱՎԱՐՈՒԹԵԱՄԲ **Կ. ԱՓՐԻԿԵԱՆԻ**

Կը խնդրուի ճշդապահ ըլլալ

# ՆԱԽԿԻՆ ՍԱՄԱԹԻԱՑԻՆԵՐՈՒ

## ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

ԱՅՍ ԿԻՐԱԿԻ ԺԱՄԸ 16էն 24

ԱՄՊԱՍԱՏԷՕՐԻ ՇՔԵՂ ՍՐԱՀՆԵՐՈՒՆ ՄԷՋ, 3 ԱՎԸՆԻՒ ԿԱՊՐԻԷԼ, Մէթրօ Քոնքորտ

*Բարձր հովանաւորութեամբ ՋՈՐ. Ժ. ՖԻԼԻՓՈՑԻ*

*Եւ պատուոյ նախագահութեամբ Պ. ՆՈՒՀԱՆ ՖՐԷՆԿԵԱՆԻ*

*Կը մասնակցի* **BACHICHA** *նուագախումբը*

Պարահանդէսի ընթացքին ընտրութիւն 1960 ի ՕՐՈՒԱՆ ԹԱԳՈՒՀԻԻՆ

*ԳԵՀԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՃՈԽ ԲԱԺԻՆ*

Միութեան Վարչութիւնը կը յայտնէ թէ նկատի ունենալով նախատեսուած հոծ բազմութիւնը, ժամը 19էն վերջ չի կրնար վերապահել այն սեղանները որոնք կանխաւ վերապահուած են: Սեղաններու համար հեռաձայնել՝

TRU. : 09-67; GUT. : 51-84; BOT. : 63-97; PYR. : 60-98; MEN. : 61-38







Սուրէն Արք. անձամբ Ամման գացած եւ բողոքած է Վարչապետին, Արտաքին եւ Ներքին Նախարարներու մօտ վանքին ներքին գործերուն իրենց միջամտութեան դէմ։

Պատկան իշխանութիւնները յայտարարած են թէ յարմար է որ Եղիշէ Եպս. վանք մնայ, առանց սակայն որեւէ ձեւով արգելք ըլլալու վանքին գործերուն բարւոք ընթացքին, յայտնելով միեւնոյն ատեն թէ Միաբանութիւնը ազատ է իր ընդհանուր ժողովը գումարելու յառաջիկայ 4 Ապրիլ երկուշաբթի եւ ընտրելու նոր Տեղապահ մը։

Պէյրութի «Ազդակ»ը Ապրիլ 6ին Երուսաղէմէն կը ստանայ հետեւեալ տեղեկութիւնները հեռաձայնով.—

Յորդանանի կառավարութիւնը մէկ ամիս յետաձգած է պատրիարքական ընտրութիւնը։

Միւս կողմէ, Յորդանանի կառավարութիւնը, երէկ՝ 5 Ապրիլին հրատարակած է հրամանագիր մը, որով պատրիարքական տեղապահի նախկին փոխանորդ Հայրիկ եպիսկոպոսը վերահաստատած է իր պաշտօնին մէջ։ Այժմ պատրիարքարանի գործերը կը վարէ Հայրիկ եպիսկոպոս։

Ինչպէս յայտնի է, պատրիարքական Տեղապահ՝ Եղիշէ Արք. Տէրտէրեան, 1956ին Էջմիածին երթալէ առաջ, իբրեւ իրեն փոխանորդ նշանակած էր Հայրիկ եպիսկոպոսը, որ վանքի ներքին ծանօթ անցուդարձերուն հետեւանքով մեկուսացուած էր։

Ժան եւ Լեւոն Փափազեան եւ համայն ընտանիքը ցաւով կը ծանուցանեն իրենց հօր եւ ազգականին՝

ԱՆԱՆԻԿ ՓԱՓԱԶԵԱՆԻ

կսկծալի մահը որ տեղի ունեցաւ Ապրիլ 9ին։

Յուղարկաւորութիւնը կը կատարուի այս երեքշաբթի ժամը 11ին Փարիզի Հայոց եկեղեցին (15 Ռիւ Ժան Կուժոն), ուրկէ մարմինը պիտի փոխադրուի Քոլոմպի գերեզմանատունը, ամփոփուելու համար ընտանեկան դամբարանը։

Մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբրեւ այդ նկատել։

ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

ՎԻԷՆ.— Տէր եւ Տիկ. Բարսեղ Բարսեղեան եւ զաւակները, Տէր և Տիկ. Ժագ Ֆրէս եւ զաւակները, մօտիկ ազգականները իրենց խորին շնորհակալութիւնները կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ, նամակով, ծաղկեպսակով եւ մամուլով իրենց անկեղծ ցաւակցութիւններով մասնակցեցան իրենց մեծ վշտին։

ՆՇԱՆ ՄՈՒՐԱՏԵԱՆԻ

կսկծալի մահուան առթիւ (15 Մարտ)։

Այս տխուր առիթով Բ. Բարսեղեան 20 Ն. Ֆ. կը նուիրէ Փարիզի Մշակոյթի Տան եւ 10 Ն. Ֆ. Վիէնի Կապ. Խաչի դպրոցներուն։

ԿՈՉ

ԼԻՈՆԻ ԵՒ ՇՐՋԱՆՆԵՐՈՒ ՀԱՅՈՒԹԵԱՆ

Լիոնի Եկեղեցաշէն Տիկնանց Միութիւնը կոչ կ'ընէ Լիոնի եւ շրջաններու ազգայիններուն, Ս. Զատկի տօնական օրերու առթիւ, լայնօրէն բերելու իրենց նիւթական նուէրները, որպէսզի մեր եկեղեցին աւարտած տեսնելու երջանկութիւնը ունենանք փութով։



ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Լիոնի Եկեղեցաշէն Տիկնանց Միութիւնը շնորհակալութեամբ ստացաւ Պ. Մ. Մնայեանի ձեռամբ, Մարաշի Հայր. Միութենէն 250 Ն. Ֆ. ի նպաստ Լիոնի եկեղեցւոյ շինութեան։

Պ. Գրիգոր Աճէմեանէ՝ իր թոռնիկին մկրտութեան առթիւ 10 Ն. Ֆ.։

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Վասպուրականի Հերոսամարտի տօնակատարութիւնը Մարսէյլի մէջ՝

ՄԱՅԻՍ 22 ԻՆ

×

Ապրիլ 17ին ՄԱՐՍԷՅԼԻ Հ.Մ.Ը.Մ.ի Պարահանդէսը՝ Ալհամպրայի մէջ։









ՃՇԴՈՒՄ

Պ. Գրիգոր Աւագեան Լիոնի եկեղեցւոյ շինութեան նուիրած է ոչ թէ 10 Ն. Ֆ., այլ 100 Ն. Ֆ.։ Իսկ Վալանսի մէջ անցեալ Դեկտ. 15ին Լիոնի եկեղեցւոյ շինութեան ի նպաստ կատարուած հանգանակութեան 50 Ն. Ֆ. մասնակցողը Պ. Ալիքսան Խանձեանն է, ոչ թէ Աւետիս Էքմէքճեանը որ սխալմամբ յայտարարուած էր։



Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ
## ԶԱՏԿԱԿԱՆ ՏՕՆԵՐՈՒ

### Ս. ՅՈՎՀԱՆՆԷՍ – ՄԿՐՏԻՉ (ՓԱՐԻԶ)

17 Ապրիլ, Ս. Զատիկ. *Տօն Յարութեան, սկիզբն ժամերգութեան ժամը 8ին, քառաձայն պատարագ ժամը 10ին, կը պատարագէ եւ կը քարոզէ Հայրապետական Պատուիրակ Սերովբէ Եպիսկոպոս Մանուկեան։*

18 Ապրիլ, Բ. օր Ս. Զատկի, *Մեռելոց, պատարագ ժամը 10ին։*

24 Ապրիլ, Նոր Կիւրակէ, *Հանդիսաւոր պատարագ, ի յիշատակ բիւրաւոր նահատակաց մերոց համաշխարհային առաջին եւ երկրորդ պատերազմաց։ Կատարի հոգեհանգիստ յամենայն եկեղեցիս Հայաստանեայց յիշատակ մեռելոց։ Կը նախագահէ Գերշ. Տէր Սերովբէ Եպիսկ. Մանուկեան եւ կը քարոզէ։*

### ՇԱՒԻԼԻ ՄԷՋ

Նոյն օրերը, նոյն ժամերուն։

Երկուշաբթի, *Մեռելոց, պատարագ կը մատուցանէ ԶԱՒԷՆ ՎՐԴ. ԱՐԶՈՒՄԱՆԵԱՆ։*

### ՎԱՐԱԳԱՅ Ս. ԽԱՉ (ԱՌՆՈՒՎԻԼ)

17 Ապրիլ, Կիրակի. *Զատիկ, սկիզբ. ժամերգ. առաւօտ ժամը 8,30ին, Պատարագ 10,30ին։*

18 Ապրիլ Բշ. *Յիշատակ Մեռելոց, յաւարտ պատարագի Հոգեհանգիստ ընդհանուր ննջեցելոց։*

### Ս. ԹԱԴԷՈՍ (ՍԷՆԹ ԱՆԹՈՒԱՆ)

Կիրակի, *Տօն Հրաշափառ Ս. Յարութեան. առաւօտ. սկիզբն ժամերգ. ժամը 7,30ին։ Պատարագ 10ին։ Քարոզ 11ին։*

Երկուշաբթի, *Մեռելոց, առաւօտ. ըսկիզբն ժամերգ. ժամը 8ին։ Պատարագ 10ին։ Հանդիսաւոր հոգեհանգիստ 11ին։*

Կիրակի, *Կրկնազատիկ. Ազգ. Սգատօն, համաշխարհային առաջին պատերազմին՝* 1914–1918, *առաւօտ. սկիզբն ժամերգ. ժամը 8ին։ Պատարագ 10ին։ Հանդիսաւոր հոգեհանգիստ 11ին։*

### ԼԻՈՆԻ ԵԿԵՂԵՑԻ

Կիրակի, Ս. Զատիկ. *սկիզբն ժամերգութեանց առաւօտ ժամը 7,30ին։ Հանդիսաւոր պատարագ ժամը 10ին։*

Երկուշաբթի, *Մեռելոց, սկիզբն ժամերգութեանց առաւօտ ժամը 8,30ին։ Պատարագ 10ին, հոգեհանգիստ 11ին։*

Կիրակի, 24 Ապրիլ. *Նահատակաց յիշատակին համար հոգեհանգստեան պատարագ ժամը 10ին։*

### Ս. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ (ՊՕՄՈՆ)

Աւագ Շաբաթ. *Ճրագալոյց, երեկոյին խթման արարողութիւնք ժամը 5ին։ Պատարագ եւ Նախատօնակ 6ին։*

Կիրակի, *Տօն Հրաշափառ Յարութեան, առաւօտ. սկիզբն արարողութեանց ժամը 7,30ին։ Հանդիսաւոր պատարագ Եկմալեան ժամը 10ին։*

Երկուշաբթի, *Մեռելոց, սկիզբն առաւօտեան արարողութեանց ժամը 8ին։ Կոմիտասեան պատարագ եւ հոգեհանգիստ ժամը 10ին։*

Նոր Կիրակի, *Կրկնազատիկ։ Յիշատակ մէկ միլիոն նահատակաց։ Սկիզբ առաւօտեան արարողութեանց ժամը 8ին։ Պատարագ Եկմալեան 10ին։ Հանդիսաւոր հոգեհանգիստ ժամը 11,45ին։*

### ՓՈՆ ՏԸ ՇԵՐԻ

Կիրակի. *Զատիկ, առաւօտ. սկիզբ ժամերգ. ժամը 8,30ին։ Պատարագ 10ին։*

Երկուշաբթի. *Մեռելոց. սկիզբ. ժամերգ. ժամը 8,30ին։ Պատարագ՝ 10ին։*

### ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Կիրակի. *Ս. Զատիկ. Յարութիւն Տեառն. առաւօտ. ժամերգութիւն, Նախատօնակ եւ Անդաստան ժամը 7,30ին։ Հանդիսաւոր պատարագ բազմաձ. երկսեռ խումբով 10ին։*

Երկուշաբթի, *Մեռելոց Ս. Զատկի. առաւօտ. ժամերգութիւն ժամը 8ին։ Պատարագ, երկսեռ խումբով ժամը 10ին։ Հոգեհանգիստ 11,45ին։*

24 Ապրիլ, Նոր Կիրակի. *Ազգային Մեծ Սգատօն։*

*Յիշատակ բիւրաւոր նահատակաց մերոց, յընթացս համաշխարհային առաջին եւ երկրորդ պատերազմաց։ Առաւօտ ժամերգ., պատարագ եւ հոգեհանգիստ ժամը* 8–11,30։

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

*Սարսէլ – Առնուվիլ Հ. Յ. Դ. «Վարդան» ենթակոմիտէն եւ ընկերները, Փարիզի Հայ Մշակոյթի Տան ֆոնտին կը նուիրեն 50 Ն. Ֆ.՝ իրենց արժանաւոր եւ տարարախտ ընկերոջ՝* Օննիկ Կարապետեանի *ցաւալի կորուստին առթիւ։*

*(Ստանալ «Յառաջ»էն)։*

×

*Ընկ. Սահակ Տէր–Թովմասեանի մահուան առթիւ, Պ. Վահան Խմէրեան 50 Ն. Ֆ. կը նուիրէ «Յառաջ»ին, փոխան ծաղկեպսակի։*

### ՏԷՍԻՆ

*Կրօն. Ընկերակցութիւնը կը ծանուցանէ թէ, այս կիրակի առաւօտ ժամը 8,30ին, Զատկուան տօնին առթիւ պատարագ պիտի մատուցուի տեղւոյս Ս. Աստուածածնայ եկեղեցւոյն մէջ։ Կը պատարագէ եւ քարոզէ Արտաւազդ Վրդ. Թրթրեան։*

### ՊՈՒԼՎԱՐ ՕՏՏՈՅԻ Ս. ՅԱԿՈԲ ԵԿԵՂԵՑԻ

Կիրակի, *Ս. Զատիկ Հրաշափառ Յարութեան։ Առաւօտ. սկիզբ ժամերգութեան ժամը 7,30ին, պատարագ 10ին։*

### ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ

10 bis, Rue Thouin, PARIS

Սուրբ Զատիկ, 17 Ապրիլ.— *Ժամերգութիւն, ձայնաւոր պատարագ եւ հաւաքական հաղորդութիւն ժամը 10ին։*

Բ. Օր Զատկի, Մեռելոց, 18 Ապրիլ.— *Հոգեհանգստեան պատարագ Քերոբէ Ե. Վ. Քատէեանի, Հ. Ղազար Վ. Սրապիոնեանի եւ Տէր Մկրտիչ Վ. Էրքէլէթեանի հոգիներուն համար։*

Նոր Կիրակի, 24 Ապրիլ.— *Յիշատակ Ապրիլեան Նահատակաց։ Ձայնաւոր պատարագ ժամը 16,30ին Սաքրէ Քէօր՝ Մոնմարթրը՝ Մայր Եկեղեցիին մէջ։*

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Այրի Տիկ. Մառի Կարապետեան խորին շնորհակալութիւն կը յայտնէ բոլոր անոնց, որոնք անձամբ, գրաւոր, ծաղկեպսակով մասնակից եղան իր խոր վշտին, սիրելի ամուսնոյն* Օննիկ *Կարապետեանի կսկծալի մահուան առթիւ։ Ի մասնաւորի Հ. Յ. Դ. «Վարդան» ենթակոմիտէին եւ բոլոր ընկերներուն։*

×

*Կուզամ հրապարակաւ խորին շնորհակալութիւններս յայտնել Ապրիլ 9 շաբաթ գիշեր Փարիզի մէջ տեղի ունեցած 50 ամեայ Յոբելեանիս տօնակատարութեան նախաձեռնութիւնը ստանձնող Պէլվիլ–Լիլա գպրոցի Կրթ. Մարմնոյն, իր բարձր հովանաւորութիւնը շնորհող Կաթող. Պատուիրակ Սերովբէ Եպս. Մանուկեանի որ իր ներկայութեամբ պատուած էր, Յոբել. Յանձնախումբի նախագահ Պ. Արմենակ Համբարձումեանի, Յանձնախումբի պատուարժան անդամներուն, փարիզահայ թատերասէր հասարակութեան, խաղընկերներուս, Փարիզի եւ արտասահմանի հայ մամուլին որոնք քաջալերեցին հայ բեմին նուիրուած համեստ մշակս, ինչպէս նաեւ բոլոր անոնց որոնք արտասահմանէն եւ հայրենիքէն հեռագրով եւ նամակներով իրենց քաջալերանքն ու շնորհաւորութիւնները ուղղեցին։*

ՏՐԴԱՏ ՆՇԱՆԵԱՆ







### ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

*Քղեցի Մամիկոն Պօղոյեան, հօր անունը Գասպար, Սէնթ Լուիզ (Ամերիկա) գացած է 1929ին։ Լուր ունեցողներէն կը խնդրուի գրել՝*

*ԺՈՐԺ ԹԱՇԼԵԱՆ*

**15, rue d'Estienne d'Orves**
**Bois Colombes Seine (France)**



Imprimerie Spéciale du journal « Haratch »

*Այրի Տիկին Հերմինէ Մերամէթճեան և զաւակները՝ Պօղոս, Ալեքս եւ Մարի–Քրիսթին, ինչպէս նաեւ Էթեէմէզեան, Ա–լեքսանեան, Ակոբովիչ եւ Սելվելի ըն–տանիքները ցաւով կը ծանուցանեն իրենց ամուսնոյն, հօր եւ ազգականին՝*

### ԼՈՒԻ ՄԵՐԱՄԷԹՃԵԱՆԻ

*մահը որ տեղի ունեցաւ Ապրիլ 14ին, 52 տարեկանին։*

*Յուղարկաւորութիւնը կատարուեցաւ Շաբաթ (Ապրիլ 16) առաւօտ Ս. Յովհ.–Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, ուրկէ մարմինը փոխադրուեցաւ Փանթէնի գերեզմանա–տունը։*

# ԱՊՐԻԼ 11

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՍՈՒԳԻ ՕՐ

Ապրիլեան Սերունդը, այս տարի, ձեռ–նարկած է արժանավայել ձեւով կատարե–լու ազգային սուգի հանդիսութիւնը

կը նախագահէ

## ԱՐՇԱՒԻՐ ԽԱՆԷՏԱՆԵԱՆ

կը խօսի

## ԱՐԱՄԱՅԻՍ ՍՐԱՊԵԱՆ

(Միլանէն հրաւիրուած)

*Տեղի կ'ունենայ Ապրիլ 24ին, կիրակի, «Փըթի ժուռնալ»ի սրահը՝* Ռիւ Քատէ։ Յայտագրին մանրամասնութիւնները յա–ջորդով։

×

### *ՍԷՆ–ՇԱՄՈՆԻ ՄԷՋ*

*Նախաձեռնութեամբ Սէն–Շամոնի Հ.Յ.Դ. «Վարուժան» կոմիտէի եւ մասնակ–ցութեամբ Կաթողիկէ եւ Աւետարանական Համայնքի պետերուն։*

*Ապրիլ 24ին, կիրակի կէսօրէն ետք ժա–մը 3,30ին, Սալ «Ժան տ'Արք»ի սրահին մէջ։*

*Կը նախագահէ ընկ. Ս. ԸՆՏՐԻԿԵԱՆ*
*Կը խօսի ընկ. Մ. ՄԻՐԶԷ։*

### ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ
### ՋԱՏԿԱԿԱՆ ՏՕՆԵՐՈՒ

### *Ս. ՅՈՎՀԱՆՆԷՍ – ՄԿՐՏԻՉ (ՓԱՐԻԶ)*

24 Ապրիլ, Նոր Կիւրակէ, *Հանդիսաւոր պատարագ, ի յիշատակ բիւրաւոր նա–հատակացն մերոց համաշխարհային ա–ռաջին եւ երկրորդ պատերազմաց։ Կա–տարի հոգեհանգիստ յամենայն եկեղեցիս Հայաստանեայց ,յիշատակ մեռելոց։ Կը նախագահէ Գերշ. Տէր Սերովբէ Եպիսկ. Մանուկեան եւ կը քարոզէ։*

### *Ս. ԹԱԴԷՈՍ (ՍԷՆԹ ԱՆԹՈՒԱՆ)*

Կիրակի, *Կրկնազատիկ. Ազգ. Սգատօն, համաշխարհային առաջին պատերազմին՝* 1914–1918, *առաւօտ. սկիզբն ժամերգ. ժամը 8ին։ Պատարագ 10ին։ Հանդիսա–ւոր հոգեհանգիստ 11ին։*

### *ԼԻՈՆԻ ԵԿԵՂԵՑԻ*

Կիրակի, 24 Ապրիլ. *Նահատակաց յիշա–տակին համար հոգեհանգստեան պատա–րագ ժամը 10ին։*

### *Ս. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ (ՊՕՄՈՆ)*

Նոր Կիրակի, *Կրկնազատիկ։ Յիշատակ մէկ միլիոն նահատակաց։ Սկիզբ առա–ւօտեան արարողութեանց ժամը 8ին։ Պա–տարագ Եկմալեան 10ին։ Հանդիսաւոր հոգեհանգիստ ժամը 11,45ին։*

### ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

24 Ապրիլ, Նոր Կիրակի. *Ազգային Մեծ Սգատօն։*

*Յիշատակ բիւրաւոր նահատակաց մե–րոց, յընթացս համաշխարհային առաջին եւ երկրորդ պատերազմաց։ Առաւօտ ժա–մերգ., պատարագ եւ հոգեհանգիստ ժամը 8–11,30։*

### *ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ*

*Փարիզի Աղքատախնամի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները՝*

*Տիկ. Թագուհի Բէչար 50 Ն. Ֆ., Պ. Ապուլեան Վէնսան 30 Ն. Ֆ., Պ. Պախ–թիարեան (Լիոնէն) փոխան ծաղկեփուն–ջի Պ. Ա. Հարբութլեանի եւ Օր. Սոնա Փանոսեանի ամուսնութեան առթիւ 100, Պ. Ստեփան Հաչէրեան 10, Տիկ. Ռօ–տունի–Սիւէրօ 3, Ոմն (Օր. Հ. Թորոս–եանի ձեռամբ) 2000, Պ. Նուպար Արթին–եան 5, Ոմն, երկու ծերանոցներուն 50, Պ. Գէորգ Պագըրճեան, ծերանոցներուն, երկու զառնուկի փոխարժէք 200, Պ. Եդ–ուարդ Պապեան 10 Ն. Ֆ., Տոքթ Ա. Ան–դրէասեան եւ Պ. Թուխտարեան 10ական եւ Պ. Ապրօ Խանճեան 20 Ն. Ֆ. Անտիյիի ծերանոցին։ Տիկ. Տէր–Եղիայեան (Պել–ֆորէն), Տիկին Վարդանոյշ Նազարեանի մահուան քառասունքին առթիւ 40 Ն. Ֆ., Պ. Տէր–Յովհաննէսեան, իր ապաքինման առթիւ 20 Ն. Ֆ.։ Տիկ. Սոֆի Ակոբովիչ 20 եւ Պ. Պ. Ե. եւ Օ. Փափազեան եղ–բայրներ, Պ. Անանիկ Անանեան 30ական Ն. Ֆ. փոխան ծաղկեպսակի ողբ. Անանիկ Փափազեանի մահուան առթիւ։ Պ. Լեւոն Տօնիկեան իր վաղեմի բարեկամին՝ տա–րաբախտ Սահակ Տէր–Թովմասեանի մահ–ուան առթիւ 50 Ն. Ֆ.։*

*Տիկ. Զօրաբաբէլեան կը նուիրէ ոչ–խար մը եւ հինգ քիլօ բրինձ Մոնմորան–սիի ծերանոցին։*

### —ՑՈՒՇԱՏԵՏՐ—

*ՍԵԲԱՍՏԻՈՅ Մուրատ Ուսումնասիրաց Միութեան ընդհ. ժողովը Ապրիլ 24ին, կիրակի առաւօտ ժամը 10ին, Իսիի Խրիմ–եան զպրոցը։*







Imprimerie Spéciale du journal « Haratch »

Տէր եւ Տիկին Միշէլ Գասապեան, Տէր եւ Տիկին Մարօթօ, Տիկին Սրբուհի Գասապեան, ինչպէս նաեւ Անդրանիկ Սարեան, Յովհաննէս Սարեան, Զարուհի Հայրաբեան, Մարգրիտ Թէքէյեան, Տիրան Գասապեան, Վիքթորիա Ալթունեան եւ Աղաւնի Գալայճեան ընտանիքները եւ համայն պարագաները ցաւով կը ծանուցանեն իրենց մօր, քրոջ եւ ազգականին՝

ԽՈՆԱՐՀԻԿ ԳԱՍԱՊԵԱՆԻ

մահը որ տեղի ունեցաւ Ապրիլ 15ին:

Յուղարկաւորութիւնը՝ այսօր, չորեքշաբթի առաւօտ ժամը 10,30ին, Իսի–լէ–Մուլինոյի գերեզմանատունը:

## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Ապրիլ 8ին աւարտած է մեր բաժանորդներէն շատերուն տարեշրջանը: Կը խնդրենք որ փութով կատարեն նոր տարեվճարը, առանց անհատական հրաւէրի սպասելու:

Կը խնդրենք նաեւ որ ցարդ առկախ հաշիւ ունեցողները օր առաջ համապատասխան գումարները ղրկեն:

Շնորհակալութիւն մեր բոլոր բաժանորդներուն որոնք իրենց կանխիկ եւ կանոնաւոր վճարումներով կը դիւրացնեն վարչութեան գործը:

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Լիոնի Ազգ. Միութիւնը շնորհակալութեամբ ստացած է Լա Քոթ – Սէն Անտրէի (Իզէռ) բնակիչ Պ. Նազար Նազարեանէ, ի նպաստ եկեղեցւոյ շինութեան, 50 Ն. Ֆ. իր ողբացեալ կնոջ՝ Տիկ. Վարդանոյշ Նազարեանի (ծնեալ Օնպաշեան) մահուան քառասունքին առթիւ:

### ՃՇԴՈՒՄ

Տէսինի Վասպուրականի Երիտասարդական Միութեան 20 Ն. Ֆ.ի նուիրատուութիւնը «Շաւարշ Միսաքեան» սրահին եղած՝ Ս. Տէր–Թովմասեանի եւ Նշան Մուրատեանի մահուան առթիւ:

### ՇԱՐԹ

ԱՊՐԻԼ 12 ԷՆ 30

**Galerie Vendôme**
**12, Rue de la Paix**

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Վասպուրականի Հերոսամարտի տօնակատարութիւնը Մարսէյլի մէջ՝

ՄԱՅԻՍ 22 ԻՆ

### ԼԸ ՖՈՅԻ ԲԱՆԱԿՈՒՄՆԵՐԸ 1960 ԻՆ (15ՐԴ ՏԱՐԻ)

Մեր բանակումները այս տարի տեղի պիտի ունենան Յուլիս 4–30 եւ Օգոստոս 1–20: Այժմ մեր գեղեցիկ բանակավայրին մէջ կը շինուին նոր ննջարաններ: Արձանագրութեան համար դիմել ժէօնէս է Աֆսիոնի Հիմնադիր–Տնօրէն Վեր. Յ. Հելվաճեանի,

6, Place de la Rotonde
St. Jérôme, Marseille 13e Tel. : 62-85-10



# ԱՊՐԻԼ 11

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՍՈՒԳԻ ՕՐ

Ապրիլեան Սերունդը, այս տարի, ձեռնարկած է արժանավայել ձեւով կատարելու ազգային սուգի հանդիսութիւնը

կը նախագահէ

## ԱՐՇԱԻՐ ԽԱՆԷՏԱՆԵԱՆ

կը խօսի

## ԱՐԱՄԱՅԻՍ ՍՐԱՊԵԱՆ

(Միլանէն հրաւիրուած)

Տեղի կ'ունենայ Ապրիլ 24ին, կիրակի, «Փըթի ժուռնալ»ի սրահը՝ Ռիւ Քատէ: Յայտագրին մանրամասնութիւնները յաջորդով:

×

### ՍԷՆ–ՇԱՄՈՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Սէն–Շամոնի Հ.Յ.Դ. «Վարուժան» կոմիտէի եւ մասնակցութեամբ Կաթողիկէ եւ Աւետարանական համայնքի պետերուն:

Ապրիլ 24ին, կիրակի կէսօրէն ետք ժամը 3,30ին, Սալ «Ժան տ'Արք»ի սրահին մէջ:

Կը նախագահէ ընկ. Ս. ԸՆՏՐԻԿԵԱՆ
Կը խօսի ընկ. Մ. ՄԻՐՋԷ:

×

### ՎԻԷՆԻ ՄԷՋ

Ապրիլ 24ին, Կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին, Սէրքըլ Կաթոլիքի սրահը Ազգ. Միութեան վարչութեան նախաձեռնութեամբ եւ մասնակցութեամբ Ազգ եւ կրօնական բոլոր միութիւններու, կազմակերպուած է յարգանքի սգատօն մը: Կը հրաւիրուի Վիէննահայութիւնը որ իր յարգանքի բաժինը բերէ աւելի քան մէկ միլիոն նահատակներու յիշատակին:

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ ԱՊՐԻԼԵԱՆ ՆԱՀԱՏԱԿԱՑ ՅԻՇԱՏԱԿԻՆ

Այս կիրակի, Ապրիլ 24, ժամը 16,30ին ձայնաւոր պատարագ:

կը պատարագէ

ԳԵՐԱՊԱՅԾԱՌ ԱՄԱՏՈՒՆԻ

**Basilique du Sacré-Coeur de Montmartre**

×

### Ս. ՅՈՎՀԱՆՆԷՍ – ՄԿՐՏԻՉ (ՓԱՐԻԶ)

24 Ապրիլ, Նոր կիւրակէ, քառաձայն պատարագ, ի յիշատակ բիւրաւոր նահատակացն մերոց համաշխարհային առաջին եւ երկրորդ պատերազմաց: Կատարի հոգեհանգիստ յամենայն եկեղեցիս Հայաստանեայց ի յիշատակ մեռելոց: Կը նախագահէ Գերշ. Տէր Սերովբէ Եպիսկ. Մանուկեան եւ կը քարոզէ:

### Ս. ԹԱԴԷՈՍ (ՍԷՆԹ ԱՆԹՈՒԱՆ)

Կիրակի, Կրկնազատիկ. Ազգ. Սգատօն, Համաշխարհային առաջին պատերազմին՝ 1914–1918, առաւօտ. սկիզբն ժամերգ. ժամը 8ին: Պատարագ 10ին: Հանդիսաւոր հոգեհանգիստ 11ին:

### ԼԻՈՆԻ ԵԿԵՂԵՑԻ

Կիրակի, 24 Ապրիլ. Նահատակաց յիշատակին համար հոգեհանգստեան պատարագ ժամը 10ին:

### Ս. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ (ՊՕՄՈՆ)

Նոր Կիրակի, Կրկնազատիկ: Յիշատակ մէկ միլիոն նահատակաց: Սկիզբ առաւօտեան արարողութեանց ժամը 8ին: Պատարագ Եկմալեան 10ին: Հանդիսաւոր հոգեհանգիստ ժամը 11,45ին:

### ՍԷՆ ՇԱՄՈՆԻ ՄԷՋ

24 Ապրիլ, Կիրակի. առաւօտեան ժամը 9,45ին հոգեհանգիստ Շափէլ Օբէլ Տիէոյի մէջ: Կը պատարագէ Հայր Մեսրոբ Ետիգարտաշեան:

### ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

24 Ապրիլ, Նոր Կիրակի. Ազգային Մեծ Սգատօն:

Յիշատակ բիւրաւոր նահատակաց մերոց, յընթացս Համաշխարհային առաջին եւ երկրորդ պատերազմաց: Առաւօտ ժամերգ., պատարագ եւ հոգեհանգիստ ժամը 8–11,30:

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Լիոնի մէջ «Մայիս 28»ը կը տօնուի Մայիս 28ի շաբաթ իրիկունը Ռիւ Տինուաուի սրահին մէջ:

Մանրամասնութիւնները մօտ ատենէն:

Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ԹԱՏԵՐԱԿԱՆ ԲԱՑԱՌԻԿ ՑԵՐԵԿՈՅԹ

կազմակերպուած Իսիի Հ.Յ.Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻՆ կողմէ

Կիրակի, 24 Ապրիլ, ժամը 15ին, Իսիի Քաղաքապետարանի սրահներուն մէջ

Կը ներկայացուի Հայոց պատմութեան անմոռանալի էջերէն

## ԱՒԱՐԱՅՐԻ ԱՐԾԻՒԸ

## ՎԱՐԴԱՆԱՆՔ

(ՈՂԲԵՐԳՈՒԹԻՒՆ 5 արար, 4 պատկեր)

Առնուվիլի «Կաւվարենց» խումբին կողմէ

Գեղարուեստական բաժին

Մասնակցութեամբ Պ. Մ. ՊՕՂՈՍԵԱՆԻ եւ Օր. Շ. ՊԷՆԿԵԱՆԻ (երգ)

Մուտք 3 եւ 5 Ն. Ֆ.

### –ՅՈՒՇԱՏԵՏՐ–

ՍԵԲԱՍՏԻՈՅ Մուրատ Ուսումնասիրաց Միութեան ընդհ. ժողովը Ապրիլ 24ին, կիրակի առաւօտ ժամը 10ին, Իսիի Խրիմեան դպրոցը:

### ՖՈՒՐՎԻԷՐԻ ՏԻՐԱՄՕՐ ԲԼՐԱՆԻՍՏ ՏԱՃԱՐԻՆ ՄԷՋ ՀԱՅԱԾԷՍ ՁԱՅՆԱՒՈՐ ՊԱՏԱՐԱԳ ԵՒ ՀՈԳԵՀԱՆԳՍՏԵԱՆ ՊԱՇՏՕՆ ԱՊՐԻԼ 24ԻՆ

Լիոնի եւ շրջակայի Հայութիւնը սիրով կը հրաւիրուի Ապրիլեան Նահատակներու եւ պատուոյ դաշտին վրայ ինկած զինուորներու համար մատուցուելիք պատարագին ու հոգեհանգստեան պաշտօնին, որոնք տեղի պիտի ունենան Ֆուրվիէրի տաճարին մէջ այս կիրակի ժամը ճիշդ 10ին:

### ՎԱՐՁՈՒ Է

Կահաւորուած եւ բաց հրապարակի վրայ նայող սենեակ եւ խոհանոց մը Տրակինեանի մէջ (Վառ) Յունիս, Յուլիս եւ Օգոստոս ամիսներուն: Ամիսը՝ 300 Ն. Ֆ.: Դիմել «Յառաջ»ին:

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ԱՐԵՒՄՏ. ԵՒՐՈՊԱՅԻ Կ. ԿՈՄԻՏԷՆ եւ Փարիզի Շրջ. Կոմիտէն ժողովի կը հրաւիրեն հետեւեալ մարմինները.—

Այս շաբաթ՝ Քրիստափոր, Փոքրիկ, Ռաֆֆի:

Այս երկուշաբթի՝ Ռոստոմ:

28 Ապրիլ, հինգշաբթի Ազբիւր Սերոբ ենթակոմիտէն:

29 Ապրիլ, ուրբաթ՝ Արամ – Շ. Միսաքեան:

30 Ապրիլ, շաբաթ՝ Արղութեան:

6 Մայիս, ուրբաթ Արծիւ:

7 Մայիս, շաբաթ՝ Զաւարեան:

8 Մայիս, կիրակի՝ Վարդան:

Ներկայ կ'ըլլան Կ. Կ.ի եւ Շրջ. Կ.ի ներկայացուցիչները:

ՎԻԷՆ.— Հ. Յ. Դաշնակցութեան Ա... Կոմիտէի ընդհ. ընկերական ժողովը տեղի պիտի ունենայ 23 Ապրիլ, շաբաթ երեկոյեան ժամը 8,30ին: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է:

